## ԿԱՆՏԻ ՊԻՏԻ ՎԵՐՍԿՍԻ ՀԱՑԱԴՈՒԼԻ

Կանտի յայտարարեց․ — « Փոխ – Արքայի որոշումը կը նշանակէ թէ՝ հացադուլիս պայմանները առնչութիւն ունին ոչ միայն Կիւրիւվանուրի շրջանին, այլ բոլոր Հնդկաստանի հետ» ։

Մահաթման ներկայիս չի կրնար ըսել թէ՝ երբ պիտի սկսի եւ որքան պիտի տեւէ իր հացադուլը, «հացադուլս կառավարութեան դժուարութիւն պատճառելու համար չէ, այլ բարենորոգիչները մտահոգելու համար որովհետեւ մարդկային ինքնութիւնը միշտ վարանող է եւ պէտք է զայն մղել՝ աշխատանքի մէջ դնելու համար ։

### Պ․ ՓՈՆՍՕ ՀՈՂ ԿԸ ԳՆԷ

Շրջող լուրի մը համաձայն, Պ․ Փոնսօ հող գնած է Շթորայի մէջ, Մասապքի պանդոկին դիմացը, ամառանոց մը կառուցանել տալու համար ։

Այս լուրը անհաւանական չի թուիր, տրուած ըլլալով որ Բ․ Քոմիսէրը խիստ հաւնած է այդ սիրուն շրջանները ։



Յ․ Հ․ Դ․

## Փարիզ եւ շրջակաները

ՀՐԱՋԴԱՆ խումբի ժողովը այս Երեքշաբթի երեկոյ ժամը 8.30ին, 32, Ավընիւ տէ Կօպլէնի սրճարանին վերնայարկը։ Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

## Գաւառ

ՎԻԷՆԻ կոմիտէն դասախօսական - վիճաբանական ժողովի կը հրաւիրէ իր շրջանի «Քրիստափոր», «Ռոստոմ» եւ «Ապառաժ» խումբերու ընկերները այսօր Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին Հ. Յ. Դ. «Խաժակ» Ակումբին մէջ։ Կը դասախօսէ ընկեր Վ. ՁՈՒԼԼԻԲԵԱՆ։ Նիւթ՝ «Հ. Յ. Դաշնակցութեան վերաբերմունքը հանդէպ Թուրքիոյ»։

Ջեկոյց կոմիտէի կողմէ գաղութիս ազգային խնդիրներու շուրջ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՏԷՍԻՆԻ կոմիտէն ընդհանուր ընկերական ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այսօր Կիրակի կէս օրէ վերջ ժամը ճիշդ 2ին Հ. Յ. Դ. Տան մէջ։ Խիստ կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն։

ՄԱՐՍԷՅԼԻ Հ․ Յ․ Դ․ Պատ․ Միութեան ընդհ․ ժողովը այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին գրադարանին մէջ, 49, բիւ Նասիոնալ։ Պարտաւորիչ ներկայութիւն։

### ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ․ ԿՈՄԻՏԷԻ ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ

ԿԱՐՏԱՆԻ ենթակոմիտէի դասախօսական ժողովը այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին Հ․ Յ․ Դ․ Տան մէջ։ Կը դասախօսէ ընկեր Ս. ՄԻԼՏՈՆԵԱՆ։ Ներկայ կ'ըլլայ Կոմիտէի ներկայացուցիչը։

ՍԷՆԹ – ԱՆԹՈՒԱՆԻ «Ընկեր Կարօ» խումբի դասախօսական ժողովը այսօր կիրակի երեկոյ ժամը 7.30ին Պար Թէրմինիւսի մէջ։ Կը դասախօսէ ընկ. Ս. ՄԻԼՏՈՆԵԱՆ։ Ներկայ կ'ըլլայ Կոմիտէի ներկայացուցիչը։

ԼԱ ՍԻՕԹԱՅԻ «Խաժակ» խումբի ընկերական ժողովը այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին սովորական ճաւաքատեղին։ Ներկայ կ'ըլլայ Կոմիտէի ներկայացուցիչը։

### Ցուանաւաց Կարմիր Խաչի Փարիզի մասնաճիւղի

## ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նախագահութեամբ՝ ՏԻԿԻՆ Ք. ԽԱՏԻՍԵԱՆԻ

**Mac-Mahon**ի ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**29 Ave. Mac-Mahon (Métro: Etoile)**

**11** ՓԵՏՐՈՒԱՐ ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ԺԱՄԸ **9.30**էն ՄԻՆՉԵՒ ԱՌԱՒՕՏ

**Jazz Puzarro, Attraction, Bar-Américain**

ՄԱՏՉԵԼԻ ՊԻՒՖԷ — ՄՈՒՏՔ 10 ՖՐԱՆՔ

## ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ, ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 3ին

ՍԵՒՐԻ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ ՄԷՋ, 26, rue Troyon, Sèvres

կը խօսի Պ. ԿԱՐԱՊԵՏ ԲԱՍՄԱՋԵԱՆ

Նիւթ՝ Հայկական դրամները լուսապատկերով ցուցադրուած։

Նուագ եւ արտասանութիւն։

### ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ

Այրի Տիկին երիցուհի Տէվլէթեան, Տէր եւ Տիկին Բիւզանդ Տէվլէթեան, Պ. Պ. Խաչիկ, Աւետիս և Օր. Էրմոնիկ Տէվլէթեան, Պ. Սարգիս Տէվլէթեան եւ պարագաները իրենց սրտագին շնորհակալութիւնները կը յայտնեն Փարիզի Հայոց Եկեղեցիի Հոգաբարձութեան որ ամէն ջանք չխնայեց արժանավայել յուղարկաւորութիւն մը կատարելու։ Շնորհակալութիւններ նաեւ Փարիզի հոգեւոր հովիւ Վռամշապուհ եպիսկոպոսին, քահանայից Դպրաց և Դասուն, ինչպէս նաեւ ամէն անոնց, որոնք անձամբ եւ գրաւոր իրենց ցաւակցութիւնները յայտնեցին

ՏԷՐ ԳԱՐԵԳԻՆ ՔԱՀԱՆԱՅ ՏԷՎԼԷԹԵԱՆԻ

դառնաղէտ մահուան առթիւ։

Փարիզ, 5 փետր. 933

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՄԱՐԻԱՄ ԹԷՔԷՐՃԵԱՆ եւ պարագաները իրենց սրտագին շնորհակալութիւնները կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ, գրաւոր եւ ծաղկեպսակով իրենց ցաւակցութիւնները յայտնեցին, իրենց զաւկին՝ ՕՐ. ԼՈՒԻԶ ԹԷՔԷՐՃԵԱՆի մահուան առթիւ։



Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme :-: PARIS (13e)

Le Gérant : H. STEPHAN



## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Զ. Ռ. ՄԻՈՒԹԵԱՆ Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. ժողովը այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 1.30ին, Պար տը Փըթի Փուսէի մէջ։ Ընկերներէն կը խնդրուի ներկայ ըլլալ։

ՎԻԷՆԻ Կէժէրէկի Հայրենակց. Միութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ 11 Փետր. Շաբաթ երեկոյեան ժամը 8ին, իր Դպրոց - Ակումբին մէջ։

Կը խնդրուի Լոռէթի, Տէսինի եւ Սէն Մօրիսի հայրենակիցներէն ներկայ գտնուիլ այս ժողովին։ Կարեւոր օրակարգ։ Վարչութեան ընտրութիւն, հաշուետուութիւն եւայլն։



Վ․ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ (ձախ եզգան)

**Հ. Յ. Դ.** *ՊԱՆԷՕ - ՔԱՇԱՆ «Արծիւ» խումբի ժողովը այս Երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին ընկ. Մ. Ալթունեանի բնակարանին մէջ,* 17 rue Ampère, Cachan:

---

**ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ**

Նախաձեռնութեամբ Ն. Պ. Հայ Սպաներու Միութեան, այսօր կիրակի, Փարիզի Հայոց Եկեղեցիին մէջ, պատարագէն վերջ, տեղի կ'ունենայ Հոգեհանգիստ ի յիշատակ Հայկական Բանակի սպարապետ՝

**ԶՕՐԱՎԱՐ Թ. ՆԱԶԱՐԲԷԿԵԱՆԻ**

Կը հրաւիրուին Միութեան անդամները եւ հանգուցեալին յիշատակը յարգողները:

---

## ՏԱՐԵԿԱՆ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

**ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԻՆ ԱՌԹԻՒ**

*ՏԵՂԻ ՊԻՏԻ ՈՒՆԵՆԱՅ ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԺԱՄԸ* 2.30*ին*

**150 Route d'Orléans***ի սրահին մէջ* **Bagneux**

---

**«ՍԻՓԱՆ» ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ ԿԸ ՏՕՆՈՒԻ**

## ՎԱՐԴԱՆԱՆՑ

**26 *ՓԵՏՐՈՒԱՐ, ԿԻՐԱԿԻ ԺԱՄԸ* 3*ին*, Salle GEOGRAPHIE***ի մէջ*

***184, Boulevard St. Germain, 184***

Կը նախագահէ՝ ՎՌԱՄՇԱՊՈՒՀ ԵՊՍԿ. ՔԻՊԱՐԵԱՆ

---



---

# ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

## ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷԻՆ

### Այսօր, կիրակի իրիկուն ժամը 8.30ին

**Société Savantes**ի մէջ **8, Rue Danton** *Մեթրօ Օտէօն կամ Սէն Միշէլ*

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝ ԸՆԿԵՐ Գ. **ԲԱԼԱՑԵԱՆ**

*Կը խօսին ընկերները՝* **ԴՐՕ Գ. ՆԺԴԵՀ Կ. ԹԱՆՏՐՃԵԱՆ**

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ. — ՍԻՓԱՆ* երգչախումբը, ղեկավարութեամբ *Մ. ՑԱԿՈԲԵԱՆ*ի: կը նուագէ ջութակահարուհի՝ *Օր. Ս. ԵՐԱՄԵԱՆ*, ընկերակցութեամբ ծանօթ երգահան՝ *Ա. ՊԱՐԹԵՒԵԱՆ*ի: կ'երգեն *Օր. Ի. ՊԻՒԼՊԻՒԼԵԱՆ* եւ *ՕՏ. ՆԱԽԱՄԱՐԴԵԱՆ*, ընկերակցութեամբ դաշնակահարուհի *ՕՐ. ԽՈՍՐՈՎԵԱՆ*ի: Արտասանութիւններ եւ կենդանի պատկեր ծանօթ արուեստագէտներու կողմէ:

*ԾԱԽՔԵՐՈՒ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ* **3** *ՖՐԱՆՔ*

---

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ՝ Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԿՈՄԻՏԷԻ եւ մասնակցութեամբ՝ բոլոր ԵՆԹԱԿՈՄԻՏԷՆԵՐՈՒ և ԽՈՒՄԲԵՐՈՒ*

*եւ սիրայօժար մասնակցութեամբ Զ. Ո. Մ. նուագախումբի*

***ՊՈՒԼՎԱՐ ՕՏՏՕԻ ՄԷՋ***

*կը նախագահէ ընկեր* Ն. ԱԶԳԻՆ

*ԱՅՍՕՐ, ԿԻՐԱԿԻ, ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ* 2.30*ին*

Կը խօսի՝ ընկ. ՎԱՀԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ

**128, *ՇԸՄԷՆ ՏԸ ԼԱ ՄԱՏՐԱԿ, ՊԱՐ ՎԷՆՍԱՆԻ ՄԷՋ***

***ՍԷՆ-ՄԱՐԿՐԻՏԻ ՄԷՋ***

*ԱՅՍՕՐ, ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ* 2.30*ին*

*կը նախագահէ ընկեր* Յ. ՊԱՆՏԻԿԵԱՆ

*ՏԵՂԻՈՅՆ ՄԱՏՈՒՌ - ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

Կը խօսի՝ Ընկ. ՊՕՂՈՍ ՀԻՒՍԵԱՆ

*ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է*

*Մարսէյլի հանդէսներուն մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:*

---



---

**Imprimerie A. DER (AGOPIAN)**

**Le Gérant : H. STEPHAN**

**17, Rue Damesme :-: PARIS (13e)**

